# ՀՐԱՀԱՆԳ

# ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ

## ԹԱՂԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ

## ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՅ

ՀԱՍՏԱՏԵԱԼ

Ի ԽԱՌՆ ԺՈՂՈՎՈՅ

ԱԶԳԱՅԻՆ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ



Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՍԱՐԸԵԱՆ

1886

# ՀՐԱՀԱՆԳ

# ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ

## ԹԱՂԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ

### ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՅ

ՀԱՍՏԱՏԵԱԼ

Ի ԽԱՌՆ ԺՈՂՈՎՈՅ ԱԶԳ. ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ



Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՍԱՐԸԵԱՆ

1886

ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ ՀԱՅՈՑ

Կ. Պոլիս 6 Դեկտեմ. 1886

Թ. 921

# ՏՐՋԱԲԵՐԱԿԱՆ

## ՈՒՂՂԵԱԼ

## ԱՌ ԹԱՂԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴՍ ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻՍ

**Մեծապատիւ Ատենապետ Էֆէնտի**

*Ազգային Կեդրոնական Վարչութիւնը Մայրաքաղաքիս Թաղային վարժարանները միօրինակ եւ կանոնաւոր ուղղութեան մը մէջ դնելու համար, կանխապէս Ուսումնական Խորհրդոյ եւս կարծիքն առնալէ յետոյ՝ պատրաստեց եւ հաստատեց ներկայ Հրահանգը, եւ սորա գործադրութեան հսկելու համար իւր կողմէ Կրթական Տեսուչ կարգեց Իւթիւճեան Մեծ. Կարապետ էֆէնտին, ըստ 42րդ յօդուածոյ սոյն Հրահանգի։*

*Հետեւաբար հաղորդելով Պատուարժան Խորհրդոյդ Բարեկարգութեան նոր Հրահանգն՝ կը յանձնարարեմք որ յառաջիկայ 1887 տարւոյն սկիզբէն հոգ տանիք եւ ջանայք ճշդիւ գործադրել Ձեր Թաղի նկատմամբ եւս սոյն Հրահանգի տրամադրութիւններն, համակերպելով ըստ ամենայնի այն տնօրէնութեանց, զորս Մեծ. Կրթական Տեսուչ էֆէնտին պաշտօն ունի գործադրել տալ օրինաց սահմանին մէջ, յանուն Կեդրոնական Վարչութեան։*

*Մնամք աղօթարար*

**Պատրիարք Կ. Պոլսոյ**

**ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ**

# ՀՐԱՀԱՆԳ
# ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ
## ԹԱՂԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԱՑ
## ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՅ

## ԹԱՂԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆՔ

*Յօդուած 1 — Թաղային վարժարանք նախակրթարան են երկու աստիճանաւ. առաջին եւ երկրորդ։*

*Առաջին աստիճանին շրջանն է 4 տարի, երկրորդին 6 տարի։*

*Յօդ. 2 — Ամէն թաղ պարտաւոր է գոնէ երկսեռ նախակրթարան մ'ունենալ, առաջին կամ երկրորդ աստիճանի, զոր Ազգային Վարչութիւնը կ'որոշէ թաղին կարեւորութեանն ու կարողութեան համեմատ։*

*Յօդ. 3 — Նախակրթարանաց շէնքը պարտի ըստ կարելւոյն համաձայն լինիլ ողջպահիկ կանոնաց. միանգամայն ամէն նախակրթարան պարտական է ունենալ հարկաւոր կահերն եւ ուսումնական պիտոյքն։*

*Յօդ. 4 — Նոր վարժարան շինելու համար հարկ է յատակագիծը կանխապէս ներկայել Ազգային Վարչութեան եւ նորա հաւանութիւնն ստանալ։*

# ՈՒՍՄՈՒՆՔ

*Յօդ. 5 — Ա. Ամսրեանի Նախակրթարանք կ'աւանդեն.*

Ա. ԿՐՕՆ. *Աղօթք եւ Քրիստոնէական հրահանգ։*

Բ. ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒ. *Ընթերցում, Գիր, Տարերք Քերականութեան եւ Ծարադրութիւն պարզ։*

Գ. ԹՈՒՐՔԵՐԷՆ. *Ընթերցում, Գիր եւ Բառագիտութիւն, (աղջկանց համար ըստ կամս)։*

Դ. ՖՐԱՆՍԵՐԷՆ *կամ* ԱՆԳԼԻԵՐԷՆ. *Ընթերցում, Գիր եւ Բառագիտութիւն։*

Ե. ԹՈՒԱԲԱՆՈՒԹԻՒՆ. *Զափք եւ Կշիռք։*

Զ. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ. *համառօտ, Ազգային եւ Օսմանեան։*

Է. ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ. *համառօտ, Օսմանեան Պետութեան, եւ Ծանօթութիւնք ի վերայ հինգ մասանց աշխարհի։*

Ը. ԻՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ։

Թ. ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԵՒ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵՐԳԵՑՄՈՒՆՔ։

Ժ. ՄԱՐՄՆԱՄԱՐԶ. *Խաղք եւ Շարժմունք։*

ԺԱ. ԱՍՂՆԵԳՈՐԾՈՒԹԻՒՆ. *Ծանօթութիւնք առ տնին տընտեսութեան (աղջկանց համար)։*

*Յօդ. 6 — Բ. Ամսրեանի Նախակրթարանք կ'աւանդեն.*

Ա. ԿՐՕՆ. *Աղօթք, Քրիստոնէական եւ Պատմութիւն Սուրբ Գրոց։*

Բ. ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒ. *Ընթերցում, Գիր, Քերականութիւն, Գրաբառէ յաշխարհաբառ թարգմանութիւն, Պարզ խմբագրութիւն։*

Գ. ԹՈՒՐՔԵՐԷՆ. *Ընթերցումն, Գիր, Բառագիտութիւն եւ Ուղղագրութիւն. (աղջկանց համար ըստ կամս)։*

Դ. ՖՐԱՆՍԵՐԷՆ *կամ* ԱՆԳԼԻԵՐԷՆ. *Ընթերցումն, Գիր, Քերականութիւն համառօտ եւ Պարզ թարգմանութիւն։*

Ե. ԹՈՒԱԲԱՆՈՒԹԻՒՆ. *Չափք եւ Կշիռք եւ Կիրառական Երկրաչափութիւն (վերջիններն արու մանկանց համար)։*

Զ. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ *Ազգային, հանդերձ Օսմանեան եւ ժամանակակից պատմութեամբք. Համառօտ ծանօթութիւն Ընդհանուր պատմութեան վրայ։*

Է. ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ *Բնական եւ Քաղաքական, հանդերձ Առեւտրական ծանօթութեամբք (արու մանկանց համար)։*

Ը. ԻՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ *եւ Բնապատմական Ծանօթութիւնք։*

Թ. ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ԵՒ ԱՌՈՂՋԱԲԱՆԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔ։

Ժ. ՏՈՄԱՐԱԿԱԼՈՒԹԻՒՆ։

ԺԱ. ԳԾԱԳՐՈՒԹԻՒՆ։

ԺԲ. ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԵՒ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵՐԳԵՑՄՈՒՆՔ։

ԺԳ. ՄԱՐՄՆԱՄԱՐԶ։

ԺԴ. ԱՍՂՆԵԳՈՐԾՈՒԹԻՒՆ. *Կար եւ Ձեւ եւ Սկզբունք Առտնին Տնտեսութեան (աղջկանց համար)։*

*Յօդ.* 7 — *Նախակրթական մէն մի տարի, դասարան մը կը կազմէ, հետեւաբար առաջին աստիճանի Նախակրթարանք չորս դասարանի, երկրորդ աստիճանի Նախակրթարանք ալ վեց դասարանի կը բաժնուին։*

*Յօդ.* 8 — *Ուսմանց բաժանումները սոյն հրահանգին յարակից աղիւսակին համաձայն կը կարգադրին, յորում նշանակուած են ուսմանց միջոցներուն ու տարիներուն բաժանումն եւ շաբաթական ժամերն։*

*Յօդ.* 9 — *Դասախօսութիւնք Հայերէն լեզուաւ կը լինին, ի բաց առեալ Թուրքերէնի եւ Ֆրանսերէնի կամ Անգլիերէնի դասերը Նախակրթարանի հինգերորդ եւ վեցերորդ կարգերուն համար։*

*Յօդ.* 10 — *Դասախօսութեանց տեւողութիւնը կէս ժամէ պակաս եւ մէկ ժամէ աւելի չ'կրնար լինիլ։*

Յօդ. 11 — Մէն մի դասարան երսունէն աւելի եւ հինգէն պակաս ուսանող չկրնար ունենալ։



## ԱՇԱԿԵՐՏՔ

Յօդ. 12 — Նախակրթարան մտնելու համար տղայ մը պարտի առ նուազն 6 տարեկան լինիլ, եւ նորա ծնողք կամ պաշտպանք պարտին Թաղական Խորհրդոյ ներկայել նորա մկրտութեան ու պատուաստման վկայագրերն։

Յօդ. 13 — Չեն ընդունուիր տարափոխիկ հիւանդութիւն ունեցող, ինչպէս եւ պակասաւոր տղայք, որոց ներկայութիւն կրնայ վնասակար լինիլ այլոց։

Յօդ. 14 — Ուրիշ թաղի վարժարան երթալու համար՝ աշակերտք պարտին իրենց թաղի վարժարանէն ուսմանց եւ վարուց ծանօթագիր ունենալ, եթէ արդէն յաճախած են անդ։ Նոյնպէս պարտին իրենց բնակած թաղին Խորհրդէն վկայագիր մը ներկայել, որոյ մէջ բացատրուած լինի իւր թաղի վարժարանը չ'երթալուն պատճառն։ Առանց այդ վկայագրին՝ ուրիշ թաղէ աշակերտ չընդունուիր։

Յօդ. 15 — Եթէ աշակերտի մը ներկայութիւնն որ եւ է պատճառաւ այլոց առողջութեան կամ վարուց վնասակար եւ կամ նոցա յառաջդիմութեան արգելք լինի, Թաղական Խորհուրդը՝ նորա ծնողաց պարտ ու պատշաճ ազդարարութիւնն ընելէ զկնի կ'արտաքսէ զնա։

Յօդ. 16 — Դպրոցական զբաղմանց միջոցին ոչ ոք կրնայ աշակերտներն ուրիշ բանի զբաղեցնել։

Յօդ. 17 — Աշակերտք վարուց եւ ուսմանց համար միճակացոյց տետրակներ կ'ունենան, յորս կը նշանակուին ամեն քառամսեայ քննութեանց վերջը նոցա վարուց եւ կրթութեան միճակին նիշերն ու բացակայութիւններն, եւ ծընողաց կը ղրկուին ։

Աշակերտաց վարուց եւ ուսմանց նիշերն են.

0 Անպիտան.

1 Տկար.

2 Միջակ.

3 Լաւ.

4 Լաւագոյն.

5 Քաջալաւ ։

Այն աշակերտք, որք ուսմանց մէջ ժրութաջան եւ ի վարս ապաքեշտ են, վարձատրութիւն կ'ստանան.

1. Պատուանիշ.

2. Հանդիսաւոր գովեստ.

3. Գովեստից վկայագիր ուղղեալ առ ծնողս 'ի դիւանց Թաղ. Խորհրդոյ.

4. Մրցանակ, Ազգ. Կեդր. Վարչութեան կողմէ որոշ թըւով սահմանեալ մէն մի դպրոցական տարւոյ համար, ի վարձատրութիւն արտասովոր արժանաւորութեամբ փայլող աշակերտաց ։

Իսկ այն աշակերտք, որք դպրոցին կանոնաց եւ պաշտօնէից անհնազանդ կը գտնուին, պատիժ կ'ընդունին.

1. Պատուանիշի կորուստ.

2. Ջրօսանքէ զրկում.

3. Հրապարակային յանդիմանութիւն.

4. Իւր ընկերակցաց հետ յարարերութենէ ժամանակաւ զրկում ։

Յօդ. 18 — Բացարձակապէս արգիլեալ է դանակոծութիւնն, ինչպէս նաեւ ողջպահիկ կանոնաց հակառակ պատիժք ։

Նմանապէս արգիլեալ է ննջեցելոց յուղարկաւորութեան եւ հարսանեաց հանդէսներու ղրկել աշակերտս յերգեցողութիւն ։

Յօդ. 19 — Թաղային եւ Մասնաւոր վարժարանաց աշակերտք իրենց կրօնական պարտականութեանց կատարման համար պարտին համաձայնիլ Կրօնական Ժողովոյ կողմէ հաստատեալ հրահանգաց ։



## ՔՆՆՈՒԹԻՒՆՔ

Յօդ. 20 — Քննութիւնք քառամսեայ եւ տարեկան են ։ Քառամսեայ քննութիւնները կը կատարեն Տնօրէնք եւ Դասատուք ի ներկայութեան Թաղին Կրօնական մարմնոյն եւ Թաղական Խորհրդոյ ։ Իսկ տարեկան քննութիւնները կը կատարեն Ուսումնական Խորհուրդը կամ նորա կողմէ կարգեալ Քննիչ Մասնախումբն եւ Կրթական Տեսուչն, ի ներկայութեան Կրօնական Ժողովոյ կողմէ կարգեալ ներկայացուցչին, Թաղին Կրօնական մարմնոյն, Թաղական Խորհրդոյ, ծնողաց եւ այլ ազգայնոց ։

Սոյն տարեկան քննութենէն յետոյ աշակերտաց ծնողներուն վիճակացոյց կը յղուի իրենց զաւակաց վարուց եւ ուսման վիճակին վրայ ։

Յօդ. 21 — Նախակրթական ուսումն աւարտող աշակերտաց վկայագիր կը տրուի ստորագրեալ Թաղական Խորհրդէն եւ վաւերացեալ Կրթական Տեսչէն ։ Իսկ ուսումնարանական ընթացքն աւարտող աշակերտաց վկայագիրք Ուսումնական Խորհրդոյ կողմէ կը տրուին ։

Յօդ. 22 — Տարեկան քննութիւնք դպրոցական տարեշրջանէն առաջ կը կատարուին, որոց օրը կ'որոշեն Թաղական Խորհուրդք, եւ գէթ 15 օր առաջ կը ծանուցանեն Ազգային Վարչութեան ։

Տարեկան քննութիւններէն զկնի, Թաղային վարժարանաց մէջ մրցանակաբաշխութեան հանդէսք կը կատարուին ընդ նախագահութեամբ Ամեն. Ս. Պատրիարք Հօր եւ կամ իւր ներկայացուցչին, եւ ի ներկայութեան Ուսումնական Խորհրդոյ կամ Կրթական Տեսչին եւ 15 օրէն մինչեւ մէկ ամիս աշակերտաց արձակուրդ կը տրուի ։

Յօդ. 23 — Դպրոցական տարեգլուխն է Սեպտեմբեր 1 ։

---

# ԱՐՁԱԿՈՒՐԴՔ

Յօդ. 24 — Վարժարանք արձակուրդ կ'ունենան, կիւրակէ եւ տօն օրերէ զատ, Կաղանդին օրը, Ս. Ծննդեան բարեկենդանին օրը, Մեծ բարեկենդանի եօթնեկին վերջին երեք օրերն, Աւագ շաբթուն վերջին երեք օրերը, Սրբոց Թարգմանչաց տօնին օրը, Վեհ. Սուլթանին Գահակալութեան տարեդարձին օրն եւ դպրոցական տարւոյն վերջն, ըստ 22դ յօդուածոյ ։

---

# ՕՐԱԳՐՈՒԹԻՒՆՔ ԵՒ ՑՈՒՑԱԿՔ

Յօդ. 25 — Ամեն Թաղային Նախակրթարան պարտի ունենալ .

1. Տումար աշակերտութեան .

2. Օրագրութիւնք ուսմանց .

3. Օրագրութիւն Տեսչական.

4. Օրագրութիւն բացակայութեան եւ փարուց.

5. Ժամանակացոյց եւ ցուցակ ուսմանց.

6. Արձանագրութիւնք քննութեանց.

7. Տետր դիտողութեանց.

8. Ցուցակ գոյից եւ գրեանց.

9. Ցուցակ ուսուցչաց եւ նոցա իւրաքանչիւր կարգի աւանդած դասերու.

10. Ցուցակ ներկայութեան եւ բացակայութեան աշակերտնէից։

---

# ՄԱՂԿՈՑ

Յօդ. 26 — Թաղական Խորհուրդք կրնան Թաղային Նախակրթարանին կից, եթէ տեղւոյն ընդարձակութիւնը ներէ, եւ կամ յարմարագոյն տեղ մը, Մաղկոց հաստատել 4—6 տարեկան մանկանց համար, որ պարտի յանձնուիլ վարժուհւոյ մը խնամոց։

Յօդ. 27 — Մաղկոցին նպատակն է զբօսուցիչ հրահանգներով եւ խաղերով արթնցնել մանկանց մտաւորական կարողութիւնները, դիւրացնել նոցա Ֆիզիգական զարգացումը, բարւոք ուղղութիւն տալ նոցա զգացմանց, եւ այսպէս պատրաստել զնոսա նախակրթութեան։ Ուստի Մաղկոցի մէջ մանկանց զբաղմունք պարտին լինիլ.

Ա. Սակաւաթող մանկական աղօթք, փոքրիկ բարոյական վէպք, երգք, առակաց բերանացի բացատրութիւն եւ ուսումն.

Բ. Ֆրէօպէլեան դրութեամբ զանազան կրթութիւնք.

Գ. 1—10 թուով առարկայից վրայ մտաւոր հաշիւք.

Դ. Մարմնամարզական խաղք եւ շարժմունք.

Ե. Ընթերցման եւ գրի սկզբունք ձայնական ձեւով եւ զուարճալի եղանակներով, եթէ մանկանց զարգացման աստիճանը ներէ։

---

## ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆ

Յօդ. 28 — Երբ թաղ մը կամ քանի մը մերձակայ թաղք միանալով Ուսումնարան մը հաստատել ուզեն, պարտին Ազգային Կեդրոնական Վարչութեան դիմել, որ նորա ծրագիրն եւ մատակարարութեան պայմանները կը տնօրինէ օրինաց սահմանին մէջ։

---

## ՄԱՍՆԱՒՈՐ ՎԱՐԺԱՐԱՆՔ

Յօդ. 29 — Մասնաւոր են այն վարժարանք, զորս մասնաւոր ազգային անհատք կամ ընկերութիւնք կը բանան իրենց սեփական հաշուոյն։

Մասնաւոր վարժարանաց թաղային վարժարաններէն ունեցած տարբերութիւնն այն է որ նիւթական մատակարարութեան մասին համարատու չեն Ազգային Կեդրոնական Վարչութեան, այլ միայն կրօնական եւ ուսումնական մասին համարատու են։

Յօդ. 30 — Այն թաղերուն մէջ, ուր Թաղ. Խորհրդոց կողմէ հաստատեալ Նախակրթարանք անբաւական են, մասնաւոր ազգային անհատք կամ ընկերութիւնք կրնան իրենց հաշուոյն վարժարան բանալ, յատկապէս արտօնութիւն առնելով Ազգային Կեդրոնական Վարչութենէն (որ այս մասին

Թաղ. Խորհրդոյ կարծիքը կանոն նախապէս) եւ նմա վաւերացնել տալով իրենց ծրագիրը ։

Յօդ. 31 — Մասնաւոր Վարժարանաց մէջ պաշտօն վարող ազգային դաստիարակք եւ ուսուցիչք պարտին արտօնագիր ունենալ Ուսումնական Խորհրդէն ։ Իսկ կրօնագիտութեան դասատուք Կրօնական Ժողովէն ։

Յօդ. 32 — Այն մասնաւոր անձինք եւ ընկերութիւնք, որք նախընթաց 29, 30 եւ 31դ յօդուածոց հակառակ վարուին, Ազգ. Կեդրոնական Վարչութեան կողմէ երիցս ազդարարուելէ յետոյ՝ օրինական խիստ տնօրէնութեանց կ'ենթարկին ։



## ԿՐԹԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Յօդ. 33 — Ազգային ընդհանուր կրթութեան վրայ կը հսկէ Ազգային Կեդրոնական Վարչութիւնն, Ուսումնական Խորհրդոյ եւ Կրթական Տեսչութեան միջոցաւ, օրինաց սահմանին մէջ ։

Յօդ. 34 — Ուսումնական Խորհուրդը պէտք զգացած ժամանակ կարող է մէկ կամ աւելի օժանդակ մասնախմբեր կազմել իւր պաշտօնին զանազան ճիւղերուն դիւրութեան համար ։ Սոյն օժանդակ մարմինք 3 էն 5 ուսումնական անձերէ կը բաղկանան, որք Ուսումնական Խորհրդոյ առաջարկութեամբ կը վաւերանան Ազգ. Կեդրոնական Վարչութեան Քաղաքական Ժողովոյ կողմէ ։

Յօդ. 35 — Կրօնական ուսմանց վերաբերեալ դասագրոց եւ դասատուաց ընտրութիւնն, ինչպէս նաեւ այս մասին հսկողութեան իրաւունքը կը պատկանի Ազգ. Կեդր. Վարչութեան Կրօնական Ժողովոյ ։

Յօդ. 36 — Թաղային Վարժարանաց մէջ գործածելի դասագրքերն Ազգ. Վարչութիւնը կ'որոշէ, հետեւաբար ներելի չէ երբէք Ազգային Պատրիարքարանէն չարտօնեալ դասագիրք գործածել ։

Յօդ. 37 — Մայրաքաղաքիս Թաղական Խորհուրդք իւրաքանչիւր դպրոցական տարեգլխի (Սեպտեմբեր 1) պարտաւոր են իրենց ընդհանուր ելմտացոյցէն Թաղային վարժարանաց մատակարարութեան յատկացեալ մասը զատելով՝ ուրոյն հաշուեցուցով մը ներկայել Ազգ. Կեդր. Վարչութեան, որ Ուսումնական Խորհրդոյ քննութենէն անցունելէ եւ հաստատելէ վերջ, կը դարձունէ Թաղ. Խորհրդոյ, որ իւր ընդհանուր ելմտացոյցին մէջ զետեղելով կը գործադրէ ։

Այս ելմտացոյցին մէջ նշանակուած պարտին լինիլ թոշակաւոր եւ անթոշակ աշակերտաց թիւն եւ թոշակաց քանակութիւնն ։

Յօդ. 38 — Թաղ. Խորհրդոց պարտականութիւնն է իրենց նախակրթարանաց բարեկարգութեանն ու կանոնաւորութեան հոգ տանիլ ըստ հրահանգի Կեդր. Վարչութեան. ջանալ որ թաղին մանկանց ոչ մին զրկուի նախակրթութենէ, եւ նախակրթարանի աշակերտք կանոնաւորապէս յաճախեն ի վարժարան, եւ նորա շրջանն աւարտելէ յետոյ միայն մեկնին. եւ ձրիապէս հոգալ աղքատ ուսանողաց բոլոր կրթական պիտոյքն ։

Յօդ. 39 — Թաղ. Խորհուրդք կրնան թաղին մէջէն օժանդակ հոգաբարձութիւններ կամ մասնախմբեր կազմել եւ նոցա միջոցաւ մատակարարել իրենց թաղային նախակրթարանները, բայց միշտ իրենք պատասխանատու կը մնան Ազգ. Կեդր. Վարչութեան առջեւ՝ Կրթական Հրահանգաց գործադրութեան եւ բարւոք մատակարարման մասին ։

Յօդ. 40 — Երբ Թաղ. Խորհուրդ մ'անփոյթ կամ անկարող գտնուի իր Թաղային վարժարանը կանոնաւոր բարեկարգութեան վիճակի մէջ պահելու ըստ Ներկայ Հրահանգի, Ազգային Կեդրոնական Վարչութեան գործադիր իշխանութիւնն՝ երիցս ազդարարելէ յետոյ՝ կը դադրեցնէ նոյն Թաղ. Խորհուրդն իբրեւ թերացեալ իր սահմանադրական ամենակարեւոր պարտականութեանց մէջ, եւ իր կողմէ կարգեալ առժամեայ խորհրդոյ մը միջոցաւ կ'ապահովէ նոյն թաղի մատակարարութիւնն։

Յօդ. 41 — Թաղ. Խորհուրդք պարտաւոր են ամեն դպրոցական տարեգլխի իրենց վարժարանաց վիճակին վրայ յատուկ տեղեկագիր ներկայել Ազգ. Կեդր. Վարչութեան։

---

## ԿՐԹԱԿԱՆ ՏԵՍՈՒՉ

Յօդ. 42 — Ազգային Կեդրոնական Վարչութեան գործադիր իշխանութիւնը՝ Կրթական հրահանգներն ու Վարչական տնօրէնութիւնները կանոնաւորապէս գործադրելու համար յատուկ Պաշտօնեայ մը կը կարգէ «Կրթական Տեսուչ» անուամբ։

Յօդ. 43 — Կրթական Տեսուչը պաշտօն ունի Թաղային վարժարանաց ընթացից, կրթական հրահանգաց անթերի գործադրութեան, ինչպէս նաեւ Թաղային վարժարանաց յատկացեալ հասութից ճշդիւ մատակարարման հսկել, եւ հանապազ տեղեկութիւն տալ Ուսումնական Խորհրդոյ՝ Թաղային վարժարանաց վիճակին եւ իր կատարած գործոց վրայ։

Յօդ. 44 — Կրթական Տեսուչը ներկայ կը գտնուի Ուսումնական Խորհրդոյ նիստերուն, բայց խօսք միայն կ'ունենայ եւ ոչ քուէ։

*Յօդ. 45 — Կրթական Տեսուչը կունենայ մի կամ երկու օգնական իւր աշխատութեանց օժանդակելու համար ։*

---

## ԿՐԹԱԿԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՅՔ

*Յօդ. 46 — Թաղային վարժարանաց Կրթական պաշտօնեայներն են՝ Ներքին Տնօրէնք, Դաստիարակք, Դասատուք, Կառավարիչք եւ Օժանդակք, այր եւ կին ։*

*Յօդ. 47 — Ամեն Կրթական պաշտօնեայ պարտաւոր է կանոնաւոր ճշդութեամբ կատարել զիւր պաշտօն ։*

*Առանց բանաւոր պատճառի բացակայ եղող պաշտօնեայն իւր թոշակէն կը տուժէ բացակայութեան ժամուց արժէքին կրկինը ։*

*Յօդ. 48 — Հիւանդութեան եւ արձակուրդի համար զեղչ չլինիր պաշտօնէից թոշակին վրայ ։ Եւ երբ հիւանդ պաշտօնէի մը տեղ առժամեայ փոխանորդ մը բերուի, սորա թոշակը վարժարանին սնտուկէն կը վճարուի մինչեւ երկու ամիս ։*

*Յօդ. 49 — Կրթական ամեն պաշտօնեայ պարտաւոր է իւր պաշտօնին համար յատուկ արտօնագիր ստանալ Ուսումնական Խորհրդէն, որոց մէջ կը նշանակուի նորա կարողութեան աստիճանն, ի բաց առեալ օտարազգի մասնագէտ դասատուներն, որոց պատուաւորութիւնը ծանօթ պէտք է լինի ։*

*Առանց արտօնագրի ներելի չէ պաշտօն վարել Ազգային վարժարանաց մէջ ։*

*Յօդ. 50 — Մայրաքաղաքէս ի գաւառ գնացող որ եւ է կրթական պաշտօնեայ, պարտի Ուսումնական Խորհրդէն տուեալ ուսուցչական արտօնագիր ունենալ ի ձեռին, առանց որոյ ներելի չէ պաշտօն յանձնել նմա, եւ զայն ընդունող Գաւառական Վարչութիւնք պատասխանատու կը մնան Կեդրոնական Վարչութեան առջեւ ։*